ՏԵՄԲԵՐԻ 3-Ը ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐՆ Է

# Նրա կյանքը անվերջանալի սկիզբ է

Մարդը քայլել է սովորում երկու անգամ և երկու անգամ էլ նա հոգատար ձեռքերի կարիք ունի։ Իր առաջին ինքնուրույն քայլերը նա անում է ծնողների և տարիներ անց կրկին առաջին վարանոտ քայլերն անում է ուսուցչի օգնությամբ։ Ասում են՝ «Ուսուցիչը երեխայի երկրորդ ծնողն է» և դա վերամբարձ խոսք չէ, այլ ճշմարտություն՝ վաղուց ապացուցված բոլոր նրանց կողմից, ովքեր ունեցել են լավ ուսուցիչներ։ Նույնն ենք վկայում Երևանի № 90 դպրոցի հայ գրականության դասատու ընկեր Վիկտորյա Հովհաննիսյանի բոլոր սաներս։

Մենք հենց առաջին դասին իմացանք, որ գրականության իմացությունը անգիրներ սովորելու և կերպարներ թվարկելու մեջ չէ միայն, որ մատյանում մեր անունների դիմաց դրված գնահատականները չեն գիտելիքների միակ չափանիշը։ Կա մի ավելի կարևոր ու զորեղ գնահատական, որ պահված է ընկեր Հովհաննիսյանի հայացքի խորքում։ Լիքն էր մեր օրը և լրիվ ապրված, երբ այդ հայացքը մեզ նայում էր ջերմությամբ։ Պատահել է (ու՞մ հետ չի պատահել), որ անպատրաստ ենք եկել դասի, և դասամատյանում դրվող «երկուսից» ավելի ծանր է եղել ընկեր Հովհաննիսյանի տրտում, կշտամբող հայացքը։ Հավանաբար դա էր պատճառը, որ բոլորս, նույնիսկ «ծույլիկները», ձգտում էինք պատրաստ ներկայանալ նրա դասին, որ նայեինք նրա աչքերին և զգայինք չխաթարված մեր մարդկային ներքին, անբառ զրույցը։

Երբեք չեմ մոռանա մայիսյան այն օրը, երբ գրականության դասն արեցինք անտառում։ Մենք դասասենյակում էինք թողել դպրոցական հոգսերը, տետրերը, օրագրերը, մատյանը, և ընկեր Հովհաննիսյանը փորձում էր կանխազգալ, թե մեզանից ով ինչպիսին է լինելու դպրոցն ավարտելուց հետո։ Ուսուցչուհին իր վերջին խորհուրդներն էր տալիս, մեզ համար նորից նոր բացահայտում էր մեզ, որովհետև ինքը մեզ ավելի լավ էր ճանաչում, քան մենք, որովհետև նրա հայացքը տարիների ընթացքում ոչ թե սահել- անցել, այլ թափանցել էր մեր խորքը, տեսել անտեսանելին։ Նա մեզ միշտ անվանում էր «իմ երեխաները» և այդ օրը, «իր երեխաներին» ուղարկում էր մի դժվարին ճանապարհորդության, որ կոչվում է կյանք, և «երեխաները» պիտի իրականացնեին նրա հույսերը։

Արդեն սավված էին հրաժեշտի բոլոր խոսքերը, բոլոր բարի մաղթանքները, ու երբ առաջին դասարանցիները մոտեցան մեզ, տեսանք, որ ընկեր Հովհաննիսյանը նրանց հետ է, նույն այն ճանապարհի սկզբին, որն ավարտում էինք մենք։ Այդ պահին մենք հայտնագործեցինք մի ճշմարտություն ևս՝ նրա ողջ կյանքը մի անվերջանալի սկիզբ է։

ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆ

# Շնորհակալություն, սիրելի ուսուցիչ

Երբ ես առաջին անգամ եկա դպրոց, ինձ և մեր դասարանի մյուս երեխաներին դիմավորեց ընկեր Ափինյանը: Ընկեր Ափինյանը եղել է մեր առաջին դասղեկը և մինչև հինգերորդ դասարան դասավանդել է մեզ: Նա աղջիկներին պարտավորեցնում էր դպրոց գալ ժապավեններով և բոլորին՝ խնամքով հագնված: Մենք սիրով կատարում էինք նրա ասածները:

Ընկեր Ափինյանը հետևում էր նաև, որ դասագրքերը մաքուր պահենք: Պատահում էր, որ ուսուցիչներից մեկնումեկը բացակայում էր և մենք զուգահեռ դասարանի հետ էինք դաս անցկացնում. անմիջապես նկատում էինք, որ նրանք հագնված են ավելի փնթի և նրանց դասարանը ավելի թափթփված է:

Այժմ մեր դասղեկը ընկեր Միքայելյանն է: Նա նույնպես բարեհամբույր է և բարի: Մի անգամ մեր դասարանից մի տղա այնպիսի արարք թույլ տըվեց, որ մտածում էինք նրան դպրոցից կվտարեն: Ընկեր Միքայելյանը չպահանջեց նրան դպրոցից վտարել և վերաբերվեց այնպես, որ ստիպեց նրան ամաչել իր արարքի համար ու երդվել այլևս երբեք նման բան չկրկնել:

*ՎԱՐԴՈՒՀԻ ԽԱՉԱՏՐՅԱՆ*
*6-րդ դաս., Երևան*

Առաջին դասարանի իմ ուսուցչուհի ընկեր Անդրեասյանին բոլորս էինք սիրում: Մտնում էր դասարան ու ժըպտալով ասում. «Տեսնեմ քանի՞սն են այսօր գերազանց ստանալու» և սկսում էր դաս հարցնել: Դասը անցնում էր հետաքրքիր և ուրախ: Ամեն մեկս սրտատրոփ սպասում էր, թե երբ է պատասխանելու հերթը իրեն հասնելու: Զանգը երբ հնչում էր, այս ու այն կողմից լըսվում էինափսոսանքի բացականչություններ:

Ավելի ուրախ ու հետաքրքիր էր, երբ մեր սիրելի ուսուցչի հետ գնում էինք որևէ տեսարժան վայր դիտելու: Դժվար էր այն օրը, երբ մենք հաջորդ դասարանը փոխադրվելով, բաժանվեցինք մեր սիրելի ուսուցչից: Բոլորս տխրել էինք և լուռ կանգնել: Հիմա էլ երեխաներով երբեմն հավաքվում ենք նրա մոտ՝ տանելով նրա համար թարմ ծաղկեփնջեր:

*ԲԱԴԱԼՅԱՆ ԱՐՄԱՆ*
*6-րդ դաս., Երևան*



# Ես՝ ուսուցչի դերում



Դպրոցում «ինքնակառավարման օր» անցկացվեց: Հիմա ամեն դասարանցի կարող է իրեն ընտուգել գործի մեջ: Ինձ պատմության դասը բաժին ընկավ: Մինչև ուշ երեկո ընթերցասրահում էի: Կարդում էի, միաժամանակ մտքով պատկերացնում, թե ինչպես եմ մտնում դասարան, ինչ հարցեր եմ տալիս, ինչ եմ բացատրում: Հիմնավոր կոնսպեկտ եմ պատրաստել, չնայած թեման համարյա բերանացի եմ արել: Նստում եմ իմ 9-ի Բ-ում, նայում եմ մաթեմատիկայի ուսուցչուհուն, բայց ինձ տեսնում եմ 2-րդ Ա-ում:

Եվ ահա այդ օրը եկավ: Պորտֆելով և թևիս տակ դրած դասամատյանով պատկառելի տեսք ունեմ: Դասարան եմ մտնում դեռ դասամիջոցին՝ անհրաժեշտ է իլյուստըրացիաները կախել և խաղաղվել (ինչպես ուսուցչուհիս էր խորհուրդ տվել)...

— Դասը սկսում ենք,— արտասանում եմ անգիր արածի պես: Զգում եմ, որ այտերս բոցավառվում են: Իսկ երեխաները, կեցցեն, չեն շարժվում՝ հասկացել են, որ ամեն ինչ իրենցից է կախված: Պատմում եմ Հոկտեմբերյան հեղափոխության, Ձմեռային պալատի գրավման մասին:

— Իսկ Կերենսկին ի՞նչ եղավ, փախա՞վ,— լսվեց մի ձայն:

Խոսքի կեսին կանգ առա: Ինչ-որ մեկը քթի տակ ծիծաղեց, վերջին նստարաններից սկսեցին իրար նայել, հետո քըչփըչոց լսվեց: Զգացի, որ կոնտակտը կորցնում եմ:

— Հիմա կպատմեմ,— վճռական հայտարարեցի, աշխատելով թեմայի մանրամասները հիշել: Հետո միասին պլան կազմեցինք, իրար հարցեր տվեցինք: Չգիտեմ ինչու, ամբողջ դասի ընթացքում ժպտում էի, և, երևի հիմար տեսք ունեի: Բայց ուսուցչուհին հավատացրեց, որ ամեն ինչ լավ էր:

Իմ ստացած առաջին հանձնարարությունը (դա կոմերիտմիության շարքերն ընդունվելուց առաջ էր) ինձ բարեկամացրեց երկրորդ դասարանցիների հետ: Հիմա մենք համարյա ամեն օր հանդիպում ենք: Ի՞նչ կդառնամ ապագայում, դեռ չգիտեմ: Միայն մի բան կասեմ, որ անհամբերությամբ սպասում եմ վաղվա օրվան, որպեսզի նորից այցելեմ 2-Ա:

*ԼՅՈՒԴԱ ՍԱՎԿՈՎԱ*
*ք. Նիկոլաև, 9-րդ դաս. աշակերտուհի*




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 54. ՀՐԱԺԵՇՏԻ ԶՐՈՒՅՑ

Սա մեր վերջին զրույցն է:

Առաջինը ձեր ամսագրում լույս է տեսել 1978-ի մայիսին:

Ինչքա՜ն ժամանակ է անցել, և ինչքա՜ն շուտ է անցնում ժամանակը: 1978-ի մայիսյան համարի ընթերցողներից շատերը, երևի, տարրական դպրոցի աշակերտներ էին, հիմա՝ բարձր դասարանների աշակերտներ են, և շատերն արդեն հրաժեշտ են տվել դպրոցին էլ, «Պիոներ» ամսագրին էլ: Ճիշտն ասած, այս երկրորդը չէի կամենա, որ լիներ՝ հասուն մարդն էլ այս ամսագրի մեջ կգտնի իրեն հետաքրքրող, հարստացնող էջեր: Շատ կուզենայի, որ մեր զրույցներն էլ դասվեին այդ էջերի շարքը: Այստեղ իմ մեջ խոսում է այն ցանկությունը, որ այս զրույցները գոնե մի քիչ օգնած լինեն մեր պատանեկության լեզվական ճաշակի մշակմանը, գիտելիքների հարստացմանը:

Իհարկե, դուք լեզուն սովորում, յուրացնում եք ձեր շրջապատում, դպրոցում, ձեր դասագրքերի և մեծապես հարգելի ուսուցիչների օգնությամբ: Մեր զրույցների նպատակն այլ բան չէր, քան մայրենի լեզվի նկատմամբ սեր բորբոքելը: Նպատակն այնքան մեծ է ու նվիրական, որ դրան մի փոքր նպաստելն անգամ քիչ բան չէ:

Իրոք, ի՞նչ կա կյանքում ավելի նվիրական ու գեղեցիկ, քան հայրենիքի, մայրենի լեզվի նկատմամբ սերը:

Ինչքա՜ն կուզենայի ունենալ իրավունք միանալու մեծ հայագետ Արսեն Ղազիկյանի այս գերագույն տենչանքին. «Զիս պահապան հրեշտակ հայ լեզվին կկոչեք. ուր էր թե ունենայի հրեշտակի մը թևերն ու թռիչքը, թռչեի հասնեի քաղաքե քաղաք, դռնե դուռ, և ամեն հայու սրտին մեջ հրդեհներ հանեի, հայ լեզուն սիրելու, գգվելու, անոր վրա գուրգուրալու»:

Ինչքան մեծ ու ազնիվ սրտեր են բաբախել, որպեսզի ամեն մի նոր սերունդ համակվի ու լցվի հայրենիքի, հայրենի պատմության, հայրենական մշակույթի, մայրենի լեզվի սիրով: Նրանք ի կատար են ածել իրենց սրբազան պարտքն ու պարտականությունը, ավանդներ են թողել ու անցել: Հետնորդներիս պարտքն ու պարտականությունն է հավատարիմ լինել այդ վեհ ու գեղեցիկ ավանդներին: Այնքան և այնպես, որքան և ինչպես կարող ենք, որքան թույլ են տալիս մեր հնարավորությունները:

Մեր զրույցների շարքն այդպիսի մի փորձ էր:

Դրա հեղինակը, արդեն տարիքն առած մարդ, այնքան միամիտ չէ, որ կարծի, թե իր զրույցները բավական են, որ պատանին տիրապետի մայրենի լեզվին, բայց չի էլ ուզում հրաժարվել այն մտքից, որ դրանք կնպաստեն տիրապետելու ձգտմանը:

Կյանքում ամենից կարևորը ձգտում ունենալն է, առանց դրա ապրել իսկ չարժե. ինչի՞ է պետք ձգտումներից զուրկ մարդը:

Ձգտում նաև մայրենի լեզվին, խոսքի կուլտուրային տիրապետելու դժվարին գործում: Հետո գալիս է ձգտումը ճիշտ ընթացք, այդ ընթացքին թափ հաղորդելու, արդյունքի հասցնելու խնդիրը:

Եթե այս զրույցները գեթ մի փոքր չափով նպաստել են դրան՝ հեղինակն իրեն վարձատրված կզգա լիովին:



# ԿԱՐՈՏ

*ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

— Ո՛չ ձի կա հիմա
Եվ ո՛չ էլ՝ շուն,—
Ասում է պապս
Ու «ախ» քաշում:
Ես ծիծաղում եմ.
— Պա՛պ, մի՛ ասա:
Երեկ կինոյում
Նրանց տեսա:
Շունը հաչում էր,
Ձին՝ խրխնջում...—
Պապս նորից է
Լուռ հառաչում:
— Կինոն ի՞նչ անեմ,—
Ասում է նա,—
Է՜հ, փոքրիկ ես դու,
Չես հասկանա:
Ախր ես մի օր
Ձի եմ հեծել:
Ախր... ինձ մի օր
Շունն է կծել:
— Վա՜յ,— ասում եմ ես,
Չե՞ս վախեցել:
Այդ անպետք շանը
Պիտի ծեծել:
— Չէ՛,— ասում է նա,—
Ծեծել պետք չէ,
Թող գար, ինձ վրա
Նորից հաչեր:
Նորից բռնեի
Ձիուս բաշից,
Եվ ինձ չհասներ
Ծամփի փոշին...—
Հետո կրկնում է.
— Ինձ չես հասկանա,
Հենց վաղը պիտի
Ես գյուղ գնամ:

ՆԿ. ԱԴԵԼ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ





Նկ. ՄՈՒՇԵՂ ՓԵՑՕՂՅԱՆԻ

Սավա անունով մի տղա կար: Լրացել էր նրա տասը տարին: Աշնանը նրան պիոներ էին ընդունելու: Բայց նա գիշեր-ցերեկ մտածում էր մի բանի մասին՝ օդաչու դառնալ: Ավագներից մեկը կատակի համար նրան խորհուրդ տվեց.

— Գնա հերոս օդաչու Գրոմովի մոտ: Նա քեզ կօգնի ուզածիդ հասնել:

Սավան գնաց, գտավ հերոս օդաչու Գրոմովի տունը և դուռը բախեց: Հերոս օդաչուն ինքը դուռը բացեց և ասաց.

— Ինչու՞ ես բախում, երբ դռան վրա զանգ կա:

— Չնկատեցի,— արդարացավ Սավան,— ես ձեզ մոտ եմ եկել շատ լուրջ գործով:

— Դե որ լուրջ գործով ես եկել, նե՛րս եկ,— ժպտաց Գրոմովը:

— Օգնեք, որ ես օդաչու դառնամ:

— Կարծում ես օդաչու դառնալն այդպես հե՞շտ բան է:

— Ես վախկոտներից չեմ:

Գ. ՍԱՎՉԵՆԿՈ

# ՉՈՐՍ ՄԱՆՐՈՒՔ

— Հավատում եմ: Բայց ինչպե՞ս կարող եմ երաշխավորել քեզ, երբ դեռ լավ չեմ ճանաչում: Ասա գոնե իմանամ, թե որտե՞ղ ես ապրում:

— Մեղվեդկովի փողոցում:

— Մոտիկ չէ: Մայրդ կանհանգստանա, որ երեկո է, իսկ դու չկաս ու չկաս: Գնանք, ես քեզ կուղեկցեմ մինչև մետրո:

Նստեցին տրոլեյբուս: Գրոմովը երկու տոմս կտրեց, մեկը տվեց նրան:

— Օգնեք օդաչու դառնամ,— նորից խնդրեց Սավվան,— ամոթով չեմ անի ձեզ:

Այդ ժամանակ նրանց մոտեցավ հսկիչը: Ամեն մեկը իր տոմսը ցույց տվեց: Սավվան սկսեց իր տոմսը փնտրել: Գրպանները փորփրեց, շուռ տվեց, բուռը հավաքեց գրպաններում եղածը՝ կոճակ, մեխ, պտուտակ, հին գրչածայր... անգամ հացի փշուր, իսկ տոմսը չկար ու չկար:

— Երևի կորցրել եմ,— շփոթված ասաց նա, թևքով սրբեց քիթը, ծուռ նայեց հսկիչին, որը դեռ սպասում էր, որ նա տոմսը ցույց տա:

Նա նորից քրքրեց գրպաններն ու վերջապես տոմսը գտավ:

Երբ նրանք տրոլեյբուսից իջան, Գրոմովն ասաց.

— Ասա խնդրեմ, ինչու՞ դու ինձ մոտ եկար այսպես ուշ ժամի:

— Երկար ժամանակ փնտրում էի № 7 տունը ու չէի գտնում:

Գրոմովը վերցրեց նրա ձեռքի թղթի կտորը, որի վրա իր հասցեն էր գրված, և տեսավ, որ այնտեղ 4-ը այնպես է գրված, որ կարելի էր 7-ի հետ շփոթել:

— Մատիտդ հանիր և գրի՛ր իմ հեռախոսի համարը,— ասաց Գրոմովը,— մատիտ ունե՞ս:

— Ունե՛մ, ունե՛մ,— ասաց Սավվան և նորից սկսեց գրպանները քրքրել:

— Դու մատիտդ պահելու որոշակի տեղ չունե՞ս:

Սավվան չիմացավ ինչ ասի:

— Պարզ է,— ասաց Գրոմովը,— քո օդաչու դառնալուն խանգարում է չորս մանրուք:

— Հենց այդքա՞ն,— ուրախացավ Սավվան:

Գրոմովի դեմքը լուրջ էր, հոնքերը թեթևակի խոժոռած էին:

— Ընդամենը կես ժամ է, ինչ ճանաչում եմ քեզ, և արդեն՝ չորս: Իմ դռանը մոտենալով, դու չնկատեցիր զանգը: Այս մեկ: Տրոլեյբուսում մոռացար, թե տոմսդ որտեղ դրիր: Երկու՛ս: Անփույթ էիր գրել տանս համարը: Այդ երեք: Եվ վերջապես՝ չորրորդ. վստահ չես՝ մատիտ ունե՞ս, և եթե ունես՝ որտեղ է գտնվում: Դե հիմա մտածի՛ր, այդպիսի ցրված մարդուն կարելի՞ է ինքնաթիռ վստահել: Ինքնաթիռի խցիկում նա կարող է լուսային ազդանշանը չնկատել, կամ մոռանալ ուրիշ հազար ու մի կարևոր բան:

Սավվան լուռ, գլուխը կախել էր:

— Դե լավ, քիթդ մի՛ կախիր, տղամա՛րդ,— խստությամբ ասաց Գրոմովը,— մի գաղտնիք ասեմ քեզ, մտքումդ լավ պահիր. ամեն օր հաղթահարիր այդպիսի թեկուզ մի մանրուք: Ամեն մի մասնագիտության համար դա անհրաժեշտ է:



*ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

# ԵՐԳՈՒՄ Է ԹՌՉՈՒՆԸ

Երգում է թռչունը,
Ճախրում ու երգում է...
Եթե չերգի,
Երկինքը կդառնա
Ծակծկված վրան,
Արևը կդառնա
Պաղ սկավառակ,
Դաշտը խսիրե,
Գետը՝ ասեղե,
Եվ բնությունը
Կկորցնի բույրը:
Երգում է թռչունը,
Ճախրում ու երգում է...
Նրա օրինակով
Երգում է քամին,
Երգում է ծովը,
Երգում են բոլոր
Բանաստեղծները...

# ԱՍՏՂԸ

Ջուրը ունի իր լեզուն,
Նա իր լեզվով ամեն օր
Զրուցում է ու վազում
Խճերի հետ գունավոր:

Տերևն ունի իր լեզուն,
Զրուցում է հովի հետ,
Անձրևն ունի իր լեզուն,
Զրուցում է հողի հետ:

Աստղն է ժպտում վերևից,
Գիտի ամենքի լեզուն,
Նա ջրի հետ, տերևի...
Զրուցում է երազում...

*Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

# ՎՐԱՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԸ




Անկրկնելի է Լոռու գեղեցկությունը: Սաղարթախիտ անտառները, լեռնային կածանները, բացատները, կարկաչահոս առվակները հմայում, կանչում են բոլորին: Ու եթե, հանկարծ, լեռնագոգում մեկ օրվա մեջ ծնվում է գույնզգույն վրանների մի ողջ քաղաք՝ լցվում երեխաների երգ ու ծիծաղով, լեռնաշխարհի գեղեցկությունը կրկնապատկվում է:

Այսպես, Լոռվա լեռնաշխարհը կրկնակի գեղեցկացավ, երբ պատանի տուրիստների շարասյուները Սպիտակից, Ղուկասյանից և Ախթալայից դուրս գալով՝ չորս օր շարունակ քայլում էին դեպի Ստեփանավան, որպեսզի մասնակցեն Գյառգյառ գյուղի մոտ կայանալիք պատանի տուրիստների հանրապետական 4-րդ մրցումներին:

... Վրաններ, ուսապարկեր, քնապարկեր, փչովի ներքնակներ, կաթսաներ, դույլեր, լապտերներ, կողմնացույցներ, լուսանկարչական ապարատներ... տուրիստական հանդերձանք: Հովիտն իրենից մի մեծ քաղաք է ներկայացնում՝ իր փողոցներով, խաչմերուկներով, պողոտաներով:

Փողփողում էին ՍՍՀՄ 15 հանրապետությունների դրոշները, խորհրդանշում այն մեծ բարեկամությունը, որ 60 տարիների ընթացքում կոփվել է մեր անծայրածիր հայրենիքի ժողովուրդների միջև:

Չորս օր շարունակ Հայաստանի գրեթե բոլոր քաղաքներից եկած պատվիրակությունները մրցում էին տուրիստական տեխնիկայով և հմտությամբ, աչքաչափական հանույթից, կոմբինացված ստուգողական արշավ-երթով:

Ինչ խոսք, ամենից դժվարը տուրիստական տեխնիկայի մրցումներն էին: Մեկնարկի գծում հավաքելով ուսապարկը, պատանի տուրիստները պետք է հաղթահարեին ձորակները, կարողանային պարանով գետանցում կատարել, անցնել ճահիճը, «տուժածին» տեղափոխել, վրան խփել, խարույկ վառել... Բոլոր թիմերն էին ձգտում ամենակարճ ժամանակում կատարել մրցույթի պայմանները, նվաճել հաղթողի կոչումը: Առավել աչքի ընկան Թումանյանի շրջանի Արևածագի դպրոցի պատանի տուրիստները:

Հավաքի օրերին անցկացվեց նաև վիկտորինա, որոշվեցին ամենահամեղ ճաշ եփողները, տուրիստական հմտություններին լավ տիրապետողները: Աչքաչափական հանույթի մրցումները նույնպես անզիջում էին: Այս անգամ անհրաժեշտ էր անծանոթ տեղանքում



Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

քարտեզագրել ձորակներն ու առվակները, խառն ու նոսր անտառները, ճանապարհներն ու արահետները, բնակավայրերը, բացատները, սճուտները: Մրցավարներն ուրախությամբ նշեցին, որ 49 թիմերից շատերին հաջողվեց ճշտությամբ կատարել այդ դժվարին առաջադրանքը:

Լենինյան պիոներիայի և ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակներին նվիրված այս մրցումներում միավորների ընդհանուր գումարով հաղթեցին Արարատի № 8 դպրոցի պատանի տուրիստները: 2-րդ և 3-րդ տեղերը գրավեցին Նոյեմբերյանի շրջանի Ծաղկաշատ գյուղի միջնակարգ դպրոցի և Արարատի շրջանային պիոներտան տուրիստական խմբերը: Խրախուսանքի արժանացավ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի տնային կառավարչության «Աչքաբաց» ակումբը: Մրցանակների, պատվոգրերի, շնորհակալագրերի արժանացան ինչպես առանձին թիմեր, այնպես էլ բազմաթիվ պատանի տուրիստներ:

ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

## ՄԵՐ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Ոսկեհասկի «Շիրակ» ճամբարը զբաղեցնում է գյուղի միջնակարգ դըպրոցի շենքը: Ճամբարը իր առօրյա եռուզեռի մեջ էր, երբ եկավ բրիգադավար Ա. Նորոյանը: Նա ճամբարի պետ ընկ. Ղուկասյանին խնդրեց օգնել ճակնդեղի նոսրացման և փխրեցման աշխատանքներին:

Քիչ հետո, ջոկատները բռնեցին դաշտ տանող ճանապարհը: Տեղում աշխատանքի բաժանում կատարվեց, Լուսինեն առաջարկեց անցկացնել լավագույն աշխատողի մրցույթ:

Բոլորն էլ աշխատում էին եռանդով, ձգտում էին մեկը մյուսից ետ չըմնալ: Մի քանի ժամ հետո, երբ ավարտեցինք աշխատանքը, հաղթողներին որոշելը այնքան էլ հեշտ չէր: Ի վերջո, առավոտյան տողանի ժամանակ ճամբարի դրոշը բարձրացնելու պատվին արժանացան Արմինե և Գնել Կիրակոսյանները:

ԳԱՅԱՆԵ ՂԱՐԱԽԱՆՅԱՆ
*ավագ ջոկատավար*



## ՄԵՐ ՀԱՐԱԶԱՏ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Վաղ առավոտ է: Դըպրոցի բակում կանգնած է կոլտնտեսության ավտոմեքենան: Իրար օգնելով բարձրանում ենք մեքենայի թափքը: Սլանում ենք լճամերձ ճանապարհով. լճի երեսին լողում, ճարպկորեն սուզվում ու ելնում են վայրի բադերը, իսկ երկնակամարում կռռում են սպիտակ ճայերը:

Բարձր սարալանջերից երևում են ամբողջովին կանաչին տվող հարթ տարածություններ, որոնց միջով հոսում են լեռնային վճիտ առվակներ: Դաշտերում սփռված են գերազանցապես կապույտ ու դեղին ծաղիկներ: Շատ հեռվում նըշմարվում են բարձր, միգապատ լեռնագագաթները, որոնք իրար գըրկած, կարծես պտույտ են տալիս մեր շուրջը:

Վեհություն, գեղեցկություն, խաղաղություն է տիրում մեր բարձրաբերձ սարերում: Սկսում ենք աշխատանքը, մաքրում ենք դաշտը քարերից, բերում կիտում իրար վրա: Քիչ հեռվում աղջիկները տարվել են գույնզգույն ծաղիկներով, շուտով նրանք էլ են գալիս միանում մեզ, փորձում են մրցել մեզ հետ... Էլ ի՞նչ տղաներ, որ թողնենք այսպիսի աշխատանքի մեջ աղջիկները մեզ հետ մրցեն ու հաղթեն:

Գագիկն ու Նուվելը մի ահագին քար են բարձրացնում ու դնում սայլակի վրա: Աղջիկներին մնում է միայն խրախուսել նրանց:

Աշխատում ենք մինչև կեսօր, հետո լվացվելու համար վազում ենք մոտակա գետափը և գալիս հացի նստում մի քարաբլրակի տակ:

Կարճատև հանգստից հետո, նորից ենք անցնում գործի: Երեկոյան վերադառնում ենք հոգնած, բայց կատակն ու ծիծաղը մեր շրթունքներից անպակաս, ուրախ, որ առջևում դեռ այսպիսի շատ օրեր ունենք:

ԱՆՏՈՆ ՍԱՀԱԿՅԱՆ
*Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան, Ժդանովականի դըպրոց, 10-րդ դասարանի աշակերտ*



# ԱՊԱԳԱՅԻ ՓՈԽԱԴՐԱՄԻՋՈՑԸ... ՀԵԾԱՆԻՎՆ Է



Հեծանիվը մարդու վաղեմի բարեկամն է: Նրա պատկերն արտացոլված է նույնիսկ Պոմպեյի պատերին: Տասնութերորդ դարի կեսերին հեծանիվով զբոսնելը եվրոպական ազնվականության ամենասիրելի զվարճություններից էր:

Հեծանիվը համընդհանուր ճանաչման արժանացավ անցյալ հարյուրամյակի երկրորդ կեսին, երբ ԱՄՆ-ում և Անգլիայում կառուցվեցին ասֆալտապատ առաջին ճանապարհները: 1885 թվականին Ջոն Ստարլեյը ստեղծեց ժամանակակից հեծանվի առաջին նմուշը: Անցել է գրեթե մեկ դար, սակայն Ստարլեյի հորինած կառուցվածքը մնացել է անփոփոխ: Այն լիովին բավարարել է հանգստի և սպորտի պահանջմունքները: Իսկ հեռավոր ճամփորդությունների համար մարդիկ արդեն ավտոմեքենա ունեին, որն էլ սկսեցին կատարելագործել:

20-րդ դարի երկրորդ կեսին ավտոմեքենաները հեղեղեցին ճանապարհները, խցանումներ առաջացնելով և աղտոտելով մթնոլորտը: Շուտով պարզվեց նաև, որ վառելիքի պաշարներն անսպառ չեն, և որ նավթն ու գազը պետք է խնայել: Արդյունքը եղավ այն, որ ավիացիայում աճեց հետաքրքրությունը վաղուց մոռացված օդապարիկների և դիրիժաբլների, նավատորմում՝ առագաստանավերի, իսկ քաղաքներում՝ հեծանիվների նկատմամբ:

Ամերիկացիների վերջին հաշվումներով օրական հեծանվով միայն Նյու Յորքի Մանհեթթենն գործարար կենտրոն է գնում 4 հազար ծառայող: Անցյալ տարվա աշնանը գործադուլ արեցին տրանսպորտի աշխատողները: Գործադուլի հենց առաջին օրը Մանհեթթենում հեծանիվների թիվը կրկնապատկվեց և գնալով աճեց: Բարենպաստ օրերին այդ թիվը հասնում է մինչև 50 հազարի: Ի դեպ, հեծանիվը գերադասում են ո՛չ միայն նյույորքցիները: Վերջին հաշվարկներով, քսան տարում ԱՄՆ-ի ճանապարհներին հեծանիվները 23,5 միլիոնից հասել են 95 միլիոնի: Իսկ չէ՞ որ Միացյալ Նահանգները ավտոմեքենաներով ամենահագեցած երկիրն է աշխարհում:

Հեծանվային ֆիրմաների տերերը որսացին նոր բիզնեսի հնարավորությունը և իրար առաջ կտրելով՝ նետվեցին կատարելագործելու հեծանիվը: Արդյու՞նքը՝ հայտնվեցին երեք և չորս անվավոր հեծանիվներ, որոնք իրենց արագությամբ ու հարմարավետությամբ մրցում են ավտոմեքենայի հետ:

Վիճակագիրները կանխատեսում են, որ 1985 թվականին երեք և չորս անվավոր հեծանիվները կհանվեն մասսայական վաճառքի, իսկ 1990 թվականին դրանք վերջնականապես շուկայից դուրս կմղեն իրենց երկանիվ եղբայրակիցներին: Կսկսվի հեծանիվների երրորդ սերնդի դարաշրջանը:

# ԹԱՆԳԱՐԱՆԸ ՍՏԵՂԾԵՑԻՆՔ, ԲԱՅՑ...

Սևանի № 4 դպրոցում հայրենագիտական թանգարան ստեղծելու որոշումը խանդավառեց բոլորիս: Չէ՞ որ դա յուրովի կօգներ մեր գիտելիքների հարստացմանը: Մենք ոգևորված գործի անցանք: Բերում էինք այն ամենը, ինչ արժեքավոր էր, ինչ բնորոշ էր մեր ժողովրդին, նրա կենցաղին: Բերում էինք սիրով, բայց և դժվարությամբ. անշուշտ, ոմանց համար դժվար էր բաժանվել սիրած առարկայից, որ տարիներ շարունակ պահել էին իբրև տոհմի ավագներից մնացած հիշատակ: Հեշտ չէր Գայանեի համար համոզել իր Լեվոն պապին, որ նա 18-րդ դարից մնացած ավետարանը հանձնի դպրոցին: Պապը չէր համաձայնում: Համոզում էր Գայանեն, համոզում, բացատրում, որ ավետարանը դպրոցում լավ կպահեն, այնտեղ կդառնա բոլորի սեփականությունը: Ի վերջո պապը զիջեց, և այժմ ավետարանը զարդարում է մեր թանգարանի ցուցափեղկերից մեկը:

Որքան մեծ եղավ մեր ուրախությունը, երբ Գարուշը, Էդիկը, Գեղամը տրակտորի վարած տեղում գտան խաչքար և ուսերին առած եկան դպրոց:

Այո, ինչ որ բերվում էր թանգարան, ուրախություն էր պատճառում մեզ՝ պատանի հայրենագետներիս՝ թե՛ մետաղադրամներն ու թղթադրամները, թե՛ կավե և փայտե ամանները, որոնք պատմում են մեզ մեր նախնիների կենցաղի մասին: Օրորոցներն ու պղնձե սափորները, բրոնզե իրերն ու աղացները մեկ անգամ ևս մեզ տեղափոխում են մեր ժողովրդի անցյալը, ծանոթացնում նրա արվեստին, արհեստներին, զբաղմունքին:

Մի առանձին բաժին են կազմում լուսանկարները, որոնք պատկերում են Սևանի շրջանի անցյալն ու ներկան, նրա նորօրյա զարթոնքը: Արդեն թանգարանում հավաքվել են 220 ցուցանմուշներ: Բոլորս էլ հաճույքով ենք մասնակցում թանգարանի հարստացման և ձևավորման աշխատանքներին:

Ուսուցիչներ Օ. Վարդանյանի, Ստ. Խաչատրյանի, Ս. Մարգարյանի օգնությամբ ապակեպատ ցուցափեղկեր ենք պատրաստել, որտեղ խմբավորվել, ցուցադրվում են հարուստ նյութերը:

Մենք մի դժվարության առջև ենք կանգնած. չենք կարողանում որոշել թանգարանում եղած առանձին ցուցանմուշների տարիքը, այն, թե ո՞ր ժամանակաշրջանին են պատկանում: Շատ հնարավոր է, որ թանգարանում նույնիսկ ուրարտական ժամանակաշրջանի նմուշներ լինեն... Երևանից հնագետներ ենք հրավիրել, որ գան օգնեն, բայց նրանք ուշանում են: Թանգարանը մեծ դժվարությամբ ստեղծեցինք, բայց այդ պատճառով բացել չենք կարողանում:

*ԴԱՐԻԿՈ ԱԴԱՄՅԱՆ*
*Սևանի № 4 միջնակարգ դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի*

Կար ժամանակ, երբ աշխարհի վրա դեռ չէր երևացել մարդ արարածը, հողագնդի մայր ցամաքում իշխում էր ստորերկրյա կրակների տիրակալ Հրաբուխը: Իսկ ծովերի և օվկիանոսների տիրակալը Նեպտունն էր:

Մի անգամ, օվկիանոսի ափին նրանք հանդիպեցին իրար և վեճի բռնըրվեցին, վիճում էին, թե իրենցից որն է ամենից ուժեղը և անհաղթելին:

— Ապա նայիր հողագնդի՛ն, այս լեռնացած ցամաքներին,— ասաց ընդերքատորգետնյա կրակների տիրակալ Հրաբուխը,— տես ինչպիսի՜ վիթխարի լեռնաշղթաներով է գոտեպնդված մայր հողը, ինչպիսի՜ գեղեցիկ ևահավոր գագաթներ են վեր խոյացած, կուտակված իրար վրա, տես ի՜նչ ծանր ու մռայլատես են ժայռերը, այս բոլորը իմն են, ես եմ սրանց ստեղծել: Ես աշխարհի ամենաուժեղն եմ և ամենահաղթը:

— Ո՛չ,— ասաց ծովերի և օվկիանոսների տիրակալ Նեպտունը,— ես եմ աշխարհի ամենաուժեղ և անհաղթ տիրակալը: Եթե ես ցանկանամ, քո այդ բոլոր մայր ցամաքները, վիթխարի լեռները ու լեռնապար գոտիները, այդ ահռաւ գագաթները, մի ակնթարթում կուլ կգնան իմ ջրերին և կտանեն ծովերի հատակը:

— Հա՛, հա՛, հա՛,— քրքջաց Հրաբուխը, և նրա ահավոր քրքիջից տերևի նման դողաց ողջ երկիրը,— սրա՛ն տես, ո՜նց է հոխորտում, հա՛, հա՛, հա՛... իսկ ես եթե ցանկանամ, քո ջրերի հատակը կպատառոտեմ, կամ այնպիսի վիհեր կբացեմ քո ընդերքում, այնպիսի լեռնապարեր կկուտակեմ և այնքան ժայռեր կլցնեմ քո ջրերը և լեռնագագաթներ կկանգնեցնեմ, որոնց նմանը դու երկրի երեսին դեռ տեսած չես լինի:

— Հոխորտում ես ի՜նքդ,— բարկացավ Նեպտունը,— համբերությունից մի՛ հանի ինձ, թե չէ իսկապես կարող եմ բարկանալ և ա՜յն ժամանակ... Ես եմ ամենաուժեղն ու անհաղթը, ոչ թե դու: Նայիր իմ տերության սահմաններին, ո՛չ ծայր ունի, ո՛չ տակ: Տես ինչպիսի՜ ծովեր և օվկիանոսներ ունեմ ես և որքա՛ն շատ են նրանք երկրի երեսին: Քո այդ մայր ցամաքները չեն հասնի իմ անսահման տարածություններին: Ես եմ աշխարհի ամենաուժեղն և անհաղթը:

Նրանք այսպես երկար վիճեցին իրար հետ և վերջապես Նեպտունը ասաց.

— Լա՛վ, իզուր ենք ջուր ծեծում, եկ մեր ուժերը չափենք մենամարտում, ով հաղթի, նա էլ կլինի աշխարհի ամենաուժեղ և անհաղթ տիրակալը:

— Թող այդպես լինի,— համաձայնեց Հրաբուխը:

Եվ քանի որ Հրաբուխը տաքգլուխ և դյուրաբորբոք էր, անմիջապես գործի անցավ:

Նեպտունը դեռ աչքը չէր թարթել, օվկիանոսի ջրերը խառնվեցին իրար, ալիքներն ալիքների ետևից խոյացան ու թափվեցին ցամաքի վրա: Յուղի նման ծառս եղավ ծովի մակերեսը: Նայեց Նեպտունն իր տիրապետությանը և աչքով տեսածին չհավատաց:

*ԷՄՄԱ ՄԱՍԻՆՅԱՆ*

# ԱՆՎԵՐՋԱՆԱԼԻ

Պատռվեց, ճեղքվեց օվկիանոսի հատակը և ճիշտ նրա մեջտեղ սկսեցին բարձրանալ ահագին լեռնաշղթաներ ու քարե զանգվածներ, լեռնագագաթներ և, այնքա՜ն բարձր, և այնպես երկնաալաց, որ ոչ հեքիաթներում է պատմըվել, և ոչ էլ գրվել, իսկ ինքը, հրաբուխների տիրակալը կանգնած միայնակ հռհռում և քրքջում, պար էր գալիս:

Բարկացավ, ծովերի և օվկիանոսների տիրակալ Նեպտունը, գալարվեց ծովի ընդերքում, լեռնացած ալիքներ ժայթքեց, արշավեց ցամաքի վրա, քանդեց, ավերեց, ամեն ինչ սրբեց, տարավ ծովի հատակը և ոչինչ չթողեց: Հրաբուխը դեռ չէր հասցրել տեսնել անգամ, թե ինչ է տեղի ունենում, որ ինքն էլ հայտնվեց օվկիանոսի հատակում: Եվ այնքան խորը ու այնպես արագ, որ քիչ մնաց խեղդվեր օվկիանոսի ջրերում:

Կատաղեց, փրփրեց այստեղ Հրաբուխը, նրա կատաղությունից ցնցվեց հողագունդը, ճայթեցին կայծակները երկնքում, երկինք խոյացան հրեղեն բոցերով բռնված եռացող լավաները, այրող ամպերի քուլաներով ծածկվեց երկիրն ու երկինքը, եռալ սկսեցին ծովերի ջրերը, բոցեղեն ամպերը խառնըվեցին ջրերին և Հրաբուխը ժայթքեց, դուրս թափեց հալված երկաթի և քարերի լավան ու ջրերի նման հոսեցրեց երկրի երեսով: Նեպտունը փորձեց ծովերի ջրերով հանգցնել կրակը, չկա-



Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# ԿՌԻՎ

(ՀԵՔԻԱԹ)

բողացավ: Արդեն կարծրացած և ծանրացած լավան մնաց իր տեղում և անշարժացավ:

Նեպտունը դեռ շփոթված չգիտեր ինչ աներ, որ հենց իր աչքերի առաջ վեր խոյացան կրակե հալվածքները, կրակե պատնեշներ դարձան և կղզիացան ծովի ջրերում: Նեպտունը դեմքը շուռ տվեց դեպի աջ և տեսավ բազմաթիվ փոքրիկ կղզյակներ, որոնց վրայից ծուխ էր բարձրանում, նայեց դեպի ձախ, այնտեղ էլ տեսավ ծխացող լեռների շղթան: Առաջվանից ավելի կատաղեց Նեպտունը.

— Այդպե՞ս, հա՛, լա՛վ, հիմա կտեսնես:— Եվ կուլ տվեց հողի մի մասը ևս, և չհասցրեց ամբողջովին կուլ տալ, որ նորից լսվեց Հրաբուխի ահեղ, աշխարհացունց որոտը:

Առաջվանից ավելի ահավոր էր ժայթքումը. կրակ թափեցին շանթերը, թրատեցին, պատառոտեցին, ծվեն-ծվեն արեցին երկինքը, դողաց, երերաց Հրաբխի երկիրը և Նեպտունը տեսավ, թե ինչպես են վեր խոյանում իր ջրերից նոր ծնվող կղզիների քարե պատնեշները և կղզիները լցվում են հրաբխային մշտածուխ հրաբխիկներով, կարկուտի նման թափվում են Նեպտունի գլխին շիկացած երկաթն ու քարերը, մոխիրն ու ամպերը, և շաղախում այդ բոլորը եռացող ջրերով: Իհարկե, դիմացավ այդ բոլորին Նեպտունը, տարավ այդ տանջանքները և մնաց անպարտ:

Եվ նոր էր հանդարտել Հրաբխի անհանգիստ ոգին, որ նորից Նեպտունը բացեց իր անկուշտ երախը, և նորից ծովերի անտակ հատակը քաշեց ցամաքի մի մեծ կտոր ևս:

Մինչև օրս էլ կռվում են նրանք ահա այսպես, և ոչ մեկը չի կարողանում հաղթել մյուսին:

*ԱՆԱՀԻՏ ՓԱՐՍԱՄՅԱՆ*




Ինչ լա՜վն էին՝ թավշե ու մուգ,
Մանուշիկի հյուսերը զույգ:
Բայց Մանուշը մի օր հոգնեց,
Էլ չեմ ուզում, ասաց, հյուսեր,
Ուզում եմ կարճ կտրած մազեր,
Թեթև, ազատ, անժամանակ:
Եվ կտրեցին հյուսերը զույգ՝
Մետաքսաթել ու սրճագույն,
Եվ Մանուշիկը հրճվալից,
Ծիծառի պես ելավ փողոց
Վարսահարդար քեռու մոտից:
Իսկ փողոցում՝
Շատ աղջիկներ՝ կարճ մազերով,
Բոլորն այնպես իրար նման,
Բոլորն այնպես՝ գանգրագլուխ...
Եվ ոչ մեկը չուներ, չուներ,
Իր հյուսերի նման հյուսեր...
Ինչ լա՜վն էին թավշե ու մուգ
Մանուշիկի հյուսերը զույգ...

*Նկ. ՆԻԿՈՂԱՅՍ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*



# ԳՈՂԱՑՎԱԾ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Ֆրանսերենի ուսուցիչը խստադեմ մաշեց տասնմեկամյա Ալֆրեդոյին։ Նա չէր սիրում այդ երկտարեցուն։

— Պատմի՛ր քո մասին, դժբա՛խտ բթամիտ,— ասաց ուսուցիչը։

Շփոթելով բայի խոնարհումները, հատ-հատ ընտրելով ֆրանսերեն բառերը և կըմկըմալով՝ Ալֆրեդոն սկսեց. «Ես փոքրիկ նեապոլցի եմ։ Աշխատում եմ ավտոնորոգման արհեստանոցում։ Այժմ հիվանդ եմ, սակայն պետք է աշխատանքի գնամ, թե չէ տերն ինձ կհեռացնի...»

Արևմտյան Եվրոպայի երկրների թվում Իտալիան առաջին տեղն է գրավում մանկական աշխատանքի շահագործման ցուցանիշով։ Գործարանատերերը Նեապոլում հիմնել են տասնյակ հազարավոր արհեստանոցներ, ուր երեխաներն աշխատում են օրական տասը ժամ։ Պաշտոնական տվյալներով՝ անչափահաս բանվորներն Իտալիայում կազմում են կես միլիոն։ Շատ տնտեսագետներ պնդում են, թե այդ թիվը բացահայտորեն նվազեցված է։ «Եթե մի գեղեցիկ օր Նեապոլի երեխաները որոշեն չաշխատել,— գրում է իտալացի ժուռնալիստ Էլեոնորա Պունտիլյոն,— արդյունաբերողները չեն դիմանա այդպիսի հարվածի»։

Եվ քանի որ իտալական կառավարությունը այնքան էլ չի ջանում պաշտպանել երեխաներին շահագործումից՝ իրենք՝ երեխաներն են պայքարում իրենց իրավունքների համար։

Անչափահաս բանվորների իրավունքների պաշտպանության նպատակով Գրավինիա քաղաքում վերջերս կազմակերպվեց «երեխաների արհմիություն»։ Ղեկավարը Լուկա Վարրեչեն է։ Տասներկու տարեկանից նա աշխատում է շինարարությունում և սեփական մաշկի վրա է զգացել սեփականատիրոջ ողորմածությունը։ Երիտասարդ բանվորը կրքոտ կոչ է անում երեխաներին պայքարել մանկական աշխատանքի շահագործման դեմ։ Լուկա Վարրեչեին հաջողվել է համախմբել հինգ հարյուր անչափահասների, իսկ «երեխաների արհմիությանը» աջակցում են Իտալիայի խոշորագույն արհմիութենական միավորումները։



ՖՅՈԴՈՐ ԱԲՐԱՄՈՎ

## ԹՌՉՈՒՆԸ ՀԱՎԱՏ Է ԸՆԾԱՅԵԼ

Գլաշևների լուսամուտի տակ՝ լճում, բադի երեք բույն կար:

Մեծ ուրախություն էր դա նրանց համար: Առավոտները արթնանում էին ու առաջին միտքն այն էր լինում, թե՝ ու՞ր են բադերը:

Վայսկա Մալին անցյալ տարի բադերից մեկը սպանեց: Մարդիկ քիչ մընաց թե դրա համար իրենք էլ նրան սպանեին:





— Չամաչեցի՞ր, ձեռք բարձրացրիր անլեզու անասունի վրա: Թռչունը հավատ է ընծայել քեզ, իսկ դու ո՞նց ես պատասխանել դրան:

## ՀԵՔԻԱԹՆԵՐԻՆ ԹԻՎ ՈՒ ՀԱՇԻՎ ՉԿԱ

Դեռ պատերազմից առաջ, ուսանողության տարիներին, գրի էի առնում հայրենի Պինեյում լսածս հեքիաթները: Մի անգամ էլ մի պառավ կին ըսկըսեց պատմել. գրի եմ առնում մեկը, գրի եմ առնում երկուսը, երեքը... իսկ նա իրար ետևից պատմում է ու պատմում:

— Դեռ շա՞տ կա, ա՛յ տատ,— հարցնում եմ:

— Ո՞վ գիտի,— ասում է,— չեմ հաշվել: Թոռս երկար ժամանակ հիվանդ էր, բուժքույրը պատվիրեց փողոց չըթողնել: Երեք շաբաթ ես նրան հեքիաթ պատմելով պահեցի տանը: Առավոտից երեկո պատմում էի: Սներես չմնացի: Էս մեր գյուղում ինչքա՛ն որ մարդ է ապրել, այնքան էլ հեքիաթներ են պատմվել, ես ասեմ հարյուր տարի, դու հասկացիր հազար...

## ԱՎԱԳՈՐՆ ՈՒ ՇԱՎԱԳՈՐԸ

—Մարդիկ մանրացել, մժեղ են դառել: Իսկ առաջ մեր էս Պինեյում գիտե՞ս ինչ հսկաներ են ապրել: Լսե՞լ ես Ավագորի ու Շավագորի մասին: Երկու եղբայրներ են եղել: Մեկը ապրելիս է եղել Ավա լեռան վրա, որ Վերկոլայից երկու կիլոմետր բարձր է: Այնտեղ մինչև հիմա էլ նրա արած վարի ակոսը երևում է: Իսկ մյուսը երկու կիլոմետր ցած՝ գյուղում էր ապրում:

Ավագորը նավակ էր նստում ու գնում եղբոր բաղնիքում լողանալու: Մի անգամ որ նավակի թիակը շարժում էր, նավակը հարյուր մետր առաջ էր թըռչում: Կացին էր պետք գալիս մեկին, մյուսին ձայն էր տալիս.

— Եղբա՛յր, կացինը դե՛սը տուր:

Եվ գցում էին կացինը մի սարից մյուսը՝ չորս կիլոմետր հեռու:

Այ թե առաջ մեր այս հողի վրա ի՛նչ մարդիկ են ապրել:



Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# ՈՒԶՈՒՄ ԵՄ ԴԱՌՆԱԼ ԵՐԳՉՈՒՀԻ

Սովորում եմ 8-րդ դասարանում: Մեծ ցանկություն ունեմ դպրոցն ավարտելուց հետո ուսումս շարունակել Ռոմանոս Մելիքյանի անվան երաժշտական ուսումնարանում:

Սիրում եմ երգել: Երգում եմ փոքրուց: Երբ տանը երգում էի, ծնողներս լսում էին և ուրախանում, այդ ինձ ոգևորում էր: Ուզում եմ երգել շատերի համար, ուրախացնել շատերին:

Ծնվել եմ Նալբանդյան գյուղում: Պապիս չեմ տեսել, պատերազմն սկսվելուն պես նա մեկնել է իր պարտքը կատարելու և չի վերադարձել: Պապիս մարտական ընկերները պատմում են, որ նա նույնիսկ կռվի թեժ պահին մարտի է գնացել երգելով: Ասում են, երգը օգնում է մարդուն ամենածանր րոպեներին, թեթևացնում նրա վիշտը: Տատիկս, երբ տանը մենակ է լինում, կամ որևէ գործ է անում, քթի տակ դնդնում է պապիս սիրած «Ջաղացս պատիկ-պատիկ» երգը:

Գիտեմ, որ երգչուհի դառնալը հեշտ չէ, բայց այնքան մեծ է իմ սերը երգի նկատմամբ, որ այդ սերը պետք է որ օգնի ինձ հասնելու իմ նպատակին:

*ԱՆԱՀԻՏ ԱՆՏՈՆՅԱՆ*
*Հոկտեմբերյանի շրջ.,*
*գ. Նալբանդյան, 8-րդ դաս.*



## ԲՆԱՆԿԱՐ

*ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ*

Մի հոգնած արև,
Մի քնկոտ լուսին,
Հերթով քայլում են
Սարերի ուսին:

Մի մոլոր շվաք,
Սառն ու անկրակ,
Պառկել է ահա
Թեքված ժայռի տակ:

Եվ մի մանուշակ,
Աչիկները փակ,
Արև է խմում
Ծաքած քարի տակ:

Կարմիր կտուցում
Լուսին ու արև,
Կաքավն է սուլում
Ժայռերից վերև...

*Նկ. ԱԴԵԼ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԻ*

«Դեղալ» տեխնիկական ուսումնարանի երրորդ դասարանի սովորող քանվոր, 15-ամյա **ԽԱՐԻՍ ԲԱՐԱՄԻ** մտքերի շարադրանքը «Իմ կյանքը» թեմայով նվիրված երեխաների միջազգային տարվան:



# ՕՏԱՐ ՁԵՌՔԵՐՈՒՄ

Իմ կյանքի ամենադաժան տարին այն էր, երբ ինձ որդեգիր վերցրին: Դա կատարվեց անսպասելիորեն: Հայրս զոհվել էր քարհանքում: Հիշում եմ այն օրը, երբ քարհատները բերեցին նրա ջախջախված մարմինը մի ծածկոցի մեջ և շարունակ հոգոց էին արձակում:

Խոշոր բեղերով մի հսկա մարդ արնաներկ ծածկոցում նրան պահում էր այնքան քնքշորեն, ասես մի երեխա էր ձեռքերի վրա, և անընդհատ հառաչում էր:

— Ա՜խ, եղբա՜յր Բարսս, այդ ինչպե՞ս մեզ թողեցիր... սրտներս դանակ խրեցիր...

Դրանից մի քանի օր առաջ էր հայրս ինձ տարել դպրոց ընդունել տվել: Տեսնեի՜ք նրա ուրախությունը: Ձեռքս բռնեց, գլուխս շոյեց, մի թեթև խփեց վզակոթիս, իր սիրած ձևով:

— Դե՛,— ասաց,— Խարի՛ս, այսօրվանից աշակերտ ես. կկարդաս, կխաղաս, ուսուցչին կլսես և մարդ կդառնաս: Հասկացա՞ր:

Ես նայում էի նրան, նրա ձայնը կարծես մի տեսակ անսովոր կերկերում էր հնչում: Աչքերը ոնց որ թրջվում էին: Այդ օրը նրա աչքերը ավելի գեղեցիկ ու ավելի լուսավոր էին:

— Ինչու՞,— ասացի,— հայրիկ: Հիմա ես մարդ չե՞մ:

— Իհարկե, մարդ ես,— ասաց,— Խարի՛ս, մի բան էլ ավելին ես: Բայց գրագիտությունը ուրիշ բան է: Դու էլ, իհարկե, ինձ նման քարհատ բանվոր կլինես, բայց կիմանաս, թե ինչու ես ապրում... Կիմանաս, որդի՛ս, թե որտեղից եկար և ուր ես գնում..· Հասկացա՞ր:

— Հասկացա:

Այդպիսին էր հայրս: Անվերջ ծիծաղում էր, անվերջ երգում: Նա մեծ էր, ուժեղ և հսկա: Ձեռքերն ասես հսկական պողպատից լինեին:

Երբ հորս թաղեցինք, մայրս սկսեց աշխատել օտար տներում: Քաղցած էինք, և մի օր մայրս ասաց.

— Խարի՛ս, որդյա՜կս, հիմա երկուսով մնացինք: Ես իմ գործին եմ գնում, դու՝ դպրոց: Երբ գործի եմ՝ մտքումս շարունակ դու ես: Քեզ տանը մենակ եմ թողնում, այս անտերունչ սենյակում աչուկներդ լացից ուռչում են: Որպեսզի մենակ չմնաս, քեզ համար աշխատանք եմ ճարել գինետանը: Դպրոցից դուրս ես գալիս և ուղիղ աշխատանքի: Այնտեղ էլ կուտես ու կաշխատես: Տերը լավ մարդ է: Հետը խոսել եմ: Նա քեզ կսիրի:

Հենց այդ օրվանից էլ հանձնվեցի օտար ձեռքերի: Սովորում էի, աշխատում, իսկ կեսգիշերին մայրս անհանգիստ սպասում էր ինձ լուսամուտի առաջ նստած: Միշտ վերադառնում էի երգելով, որովհետև վախենում էի խավարից ու մարդկանցից և ինձ սիրտ էի տալիս...

Մի գիշեր գինետանը ինձ ծեծեցին: Մի պարոն ձեռքով-ոտքով խոսելու ժամանակ շուռ տվեց ջրի բաժակներով ծանրաբեռնված մատուցարանը և թրջվեց: Ասես դրան էր սպասում.. Ամուր սեղմեց ականջս, գլուխս խփեց սեղանին, ինձ էշ անվանեց և այնպիսի մի ապտակ իջեցրեց, որ մատների կապույտ հետքերը մնացին երեսիս: Այն ժամանակ առաջին անգամ հասկացա, թե ինչ են նշանակում օտար ձեռքեր: Լաց չեղա: Միայն ատամներս սեղմեցի ու նրան էի նայում ատելությամբ լցված: Ինձ համար անսպասելիորեն խկույն ոտքի կանգնեց ողջ գինետունը:

Տերս թողեց խոհանոցի շերեփը և եկավ ինձ մոտ: Նա փափուկ, հանգիստ մարդ էր: Առաջին անգամ նրան տեսա գազազած.

— Ի՞նչ իրավունքով,— ասաց,— ի՞նչ իրավունքով, պարո՛ն, ձեռք ես բարձրացնում երեխայի վրա: Դու գիտե՞ս, թե ով է այս տղան: Գիտե՞ս, թե ինչ արյուն հայր ուներ: Ախր, սա Բարսեղներից է, Խարիս Բարսեղը... Գոնե մի քիչ ամաչիր, հասակիցդ ամաչիր, պարոն ես, նույնիսկ թիթեռնաձև փողկապ ես կապել... Բոլոր էակները, պարոն, որոնք այս անտեր աշխարհն են գալիս, ապրելու իրավունք ունեն... Թեկուզ նրանք լինեն թռչուններ, ծաղիկներ և, մանավանդ, երեխաներ... Ի՞նչ իրավունքով ես արհամարհում նրանց: Ամո՜թ է, ամո՜թ:

Լացս եկավ, սեփական անունս էի լսել, անունս, որը քիչ էր մնացել մոռանայի, որովհետև աշխատող որբ երեխան անուն չունի: Նա «փոքրիկ» է: «Արի, փոքրիկ...» «Գնա, փոքրիկ..·» «Կոշիկներս սրբիր, փոքրիկ.·.»

Այդ գիշեր տուն էի վերադառնում առնականացած: Չէի վախենում, չէի երգում: Միայն թե, մայրս նայելով

կապտած դեմքիս՝ լուռ արտասվում էր...

Օտար ձեռքերում, իհարկե, ամեն ինչ սև չէ: Կան մարդիկ, որոնք լուսավորում են մեր ուղին: Այդպիսին է, ահա, այն պտղավաճառը, որը խաղող տվեց ինձ, մի ճոխ ողկույզ, սաթագույն, ոսկեզօծ, որը երբ կողովից վերցրեց ու բարձրացրեց խաղացնելով, թվաց շողշողացող ցնծություն ապրեց: Սակայն ոչ թե խաղողի համար, այլ նրա, թե ինչ ձևով ինձ տվեց ողկույզը, ինչպես էր նայում անօգնականիս, անփորձիս ու անտեղյակիս... Կանայք, որ կողովներից խաղող էին ջոկում, աչքները լայն բացել ու զարմացել էին:

— Բարասի տղա՞ն ես,— հարցրեց:

— Այո, Բարասի:

— Հիշու՞մ ես հորդ:

— Հիշում եմ:

— Ինչպե՞ս են քեզ անվանում:

— Բարաս, Խարիս Բարաս:

— Ապրես: Ասա, գոռալով ասա այդ անունը: Այդպիսի՝ ժայռանման մարդիկ երբեք չեն մեռնում:

Մի անգամ կանայք եկան մորս մոտ և ասացին, թե մի հարուստի երեխա է մահացել, իմ տարիքի մի երեխա են ուզում վերցնել, տանել իրենց երեխան դարձնել, ուսումի են տալու, պարոն է դառնալու...

Մայրս արտասուքից խեղդվելով՝ խնդրեց ինձ.

— Գնա՛, ջիգյա՛ր ջան, գնա՛... Ես մենակ կմնամ... ոչինչ... Բայց դու պարոն կդառնաս:

Այնժամ ես հիշեցի հորս, ինձ խաղող տվող մարդուն...

— Չեմ գնա,— ասացի,— պարոն չեմ ուզում դառնալ:

Մի օր էլ բակ մտավ մի շքեղ ավտոմեքենա: Տիկինն էր եկել, նոր մայրս: Ասես սև սարդ մտավ մեր սենյակը:

Ամեն ինչը սև էր՝ ձեռնոցները, ականոցները, մինչև իսկ սպիտակ թաշկինակի ծայրերին սև, սգո լայն ժապավեն էր կարված: Մայրս դողդողալով վեր կացավ, ուզում էր սուրճ, մրգահյութ մատուցել, իհարկե, եթե տիկինը կամենար... Իսկ նա ծանր թառանչներ արձակելով սկսեց ինձ հարցեր տալ, ուզում էր խելքս չափել:

Առաջին իսկ րոպեից մի տարօրինակ զգացում ունեցա նոր մորս նկատմամբ: Ես այն տպավորությունն ստացա, որ նա ինձ շան տեղ դնելով, եկել էր գնելու պատաջ տանելու:

— Ի՞նչ է անունդ, փոքրի՛կ:

—Խարիս Բարաս, տիկի՛ն:

— Դա բոլորովին սազական անուն չէ... Եթե ինձ հետ գաս, իմ տղան կըդառնաս, իմ Լյալիկը... Դու նա ես լինելու: Նրա նման... Հասկացա՞ր:

Փշաքաղվեցի: Մայրս կուլ էր տալիս արցունքները: Մեր սենյակը ասես մառախուղով լցվեց: Տիկինը մի կում սուրճ կուլ տվեց, հանեց սև երիզով թաշկինակը, հառաչեց.

— Իհարկե, տիկին, դու սիրում ես որդուդ, ուզում ես նրան պարոն տեսնել, սակայն պաշտոնական որդեգրման պահից նա իմ սեփականությունն է դառնալու: Մինչ այդ, մի փորձ պետք է անենք: Նա պետք է մեզ մոտ ապրի: Նա պետք է ընտելանա, որովհետև, գիտեք, լակոտները հեշտորեն չեն հեռանում աղբակույտից...

Մի պահ մորս աչքերը զայրույթից փայլատակեցին...

— Բայց, տիկի՛ն, նա շուն չէ, գցված երեխա չէ, երեխա է... երեխա:

Այսպես ավարտվեց առաջին ծանոթությունս իմ նոր մոր հետ: Դա մի բաժակ դառնություն էր, որը միանգամից կուլ տվեցի, և հետո մեքենան նստեցին ու գնացին:

Նոր տանը նա պատից իջեցրեց իր մեռած որդու սև շղարշով երիզված լուսանկարը և ասաց.

— Ուզում եմ, որ այսպիսին լինես, Լյալի՛կ... Ականջներդ ծածկող այդ մազերդ, աղքատների թաղամասի հոտը կրող այդ հագուստներդ պետք է վերացնել։ Փոխվելու են նաև քո այդ աչքերը, որ ինձ են նայում վայրի կենդանու հայացքով։

Նա խոսում էր և միաժամանակ հագուստներս հանում։ Հագուստներս հանելուց հետո հագցրեց մահացած որդու հագուստները։ Նավթալինի և օտար հիվանդի քրտինքի հոտը ինձ խեղդեց։ Հանգուցյալի մատները ասես սառը օձերի նման գալարվում էին մարմնիս վրա, ինձ գրկում էին գերեզմանաքույր շնչով։ Վերջում նա գլխիս դրեց մեռած տղայի ծովայինի գլխարկը, որը շատ փոքր էր իմ գլխի համար։ Ըստ երևույթին հանգուցյալի գլուխը փոքր է եղել։

— Ահա այսպես... Հիմա դու իմ որդին ես։ Այլևս դու Լյալիկ ես,— ասաց, ճակատս համբուրեց և մեջքիս հագցրեց մեռած տղայի գրքերով, տետրերով, գրչատուփով լցված ուսապայուսակը։ Ինձ տարավ նույն դպրոցը, նույն դասարանը, նստեցրեց նույն նստարանին։ Երեխաները աչքերը չըռեցին։ Այնպես էին նայում, կարծես ես կախարդ լինեի։ Կամաց-կամաց համարձակվեցին խոսել.

— Ո՞վ ես դու,— հարցրին ինձ.

— Խարիսն եմ,— ասացի,— Խարիս Բարասը...

— Դու հո էն մեռածը չե՞ս...

— Ոչ,— ասացի,— ինձ հոգեզավակ են վերցրել։

Բոլորը հեռացան մոտիցս, ասես ես վարակված էի խոլերայով։ Հեռացավ նաև նույն նստարանին, կողքիս նըստած տղան։

Այդ դասարանում կյանքս ծանր պայքար դարձավ. տղաների հետ ամենօրյա առճակատումը օրս անհամանհոտ դարձրեց։ Նրանք ինձ հալածում էին։ Ծածրաձայն անվանում էին «մեռածը», «գնչուն», «խոլերան», «քըսոտը», «կեղծ որդին», «պարոնի զավակը»...

Իսկ մի օր ինձ շրջապատեցին ու սեղմեցին պատին։ Խնդրեցի, որ հանգիստ թողնեն, բացի տվին, ցած գըցեցին և ծեծեցին։ Երբեք չէի սպասում, որ այդ ատիճան դաժանության կըհասներ նրանց անարդարացի թշնամանքը։

Մի քիչ էլ եթե շարունակեին, ես գուցե չապրեի էլ, վեր կացա ու սկսեցի աջ ու ձախ հարվածել։

Տանը նոր մայրս ասաց, որ անուղղելի և վայրի լակոտ եմ, թունավոր օձ եմ, երբեք չեմ հասկանա, թե որտեղից ուր եմ հասել, սկսեց մազերս պոկել։ Համբերությունից հանեց. ու այդ գիշեր մահացած տղայի հագուստը դեն գըցեցի, կրկին հագա իմ հագուստները, որոնք մի դարակում պահել էր նոր մայրս, և հեռացա։

Քանի՜ տարի է անցել այդ օրից։ Այդ նույն տարին մայրս մահացավ քաղցկեղից։ Նրա ժպիտը գիշերները ինձ ջերմացնում է։ Ձեռքս երկարում եմ այդ հեքիաթ դարձած տեսիլքին, և զարթնում եմ միշտ նույն ճիչով.

— Մայրի՜կ, մա՛մա...

*Գրի առավ՝ Ն. ՊԱՊԱՊԵՐԻԿԼԵՍԸ*
*Հունարենից թարգմանեց՝ Հ. ՂԱԶԱՐՈՍՅԱՆԸ*

# Վանակն, կամ լեռնային բյուրեղապակի

Հողի մեջ երբեմն պատահում են թափանցիկ քարեր՝ տափարակ նիստերով, ուղիղ եզրերով բազմանիստեր, ասես, ինչ-որ մեկը դրանք խնամքով հղկել ու փայլեցրել է: Սակայն այս քարերին հղկիչ բանվորի ձեռքը չի դիպել: Դրանք ստեղծել է բնությունն ինքը, և կոչվում են բյուրեղներ:

Հին հույները բյուրեղներն անվանել են «կրիստալոս», որ բառացի նշանակում է «սառույցին ազգակից»:

Հին Հռոմի գիտնականները ենթադրում էին, որ լեռնային բյուրեղապակին ծնվում է բարձր լեռներում՝ երկնային խոնավությունից և մաքրաթույր սառույցից:

Լեգենդն այն մասին, թե խիստ սառած և երկար ժամանակ լեռներում մնացած սառույցը վերածվում է բյուրեղապակու, շատ երկար ապրեց: Մասամբ այդ կարելի է բացատրել նրանով, որ Եվրոպայում լեռնային բյուրեղապակու բյուրեղները սովորաբար գտնում էին բարձր լեռներում, հաճախ հավերժական ձյուների սահմաններից վեր: Այս քարի հարստությամբ առանձին հռչակ էր վայելում Դոֆինե կոչվող տեղանքը ֆրանսիական Ալպերում:

Թե լեռնային բյուրեղապակու բնույթի մասին ինչ կարծիք ունեին մարդիկ ավելի ուշ, միջին դարերում, պատկերված է Վիկտոր Հյուգոյի «Մարդը, որ ծիծաղում է» վեպում: Հերոսներից մեկի՝ Ուրսուսի հարցաքննության ժամանակ, բժշկության պաշտոնական ներկայացուցիչը ասում է. «Ապացուցված է, որ բյուրեղը հետևանք է սառույցի բնական գոլորշիացման (սուբլիմումի), այսինքն՝ գոլորշիացման առանց հեղուկանալու: Իսկ ալմաստը արդյունք է բյուրեղապակու գոլորշիացման: Ապացուցված է, որ սառույցը բյուրեղ է դառնում հազար տարի հետո, իսկ բյուրեղը ալմաստ է դառնում հազար դար հետո»:

Միջնադարում լեռնային բյուրեղապակին հայերն անվանում էին «Վա-



նակն», այսինքն՝ «Վանի քար»: Այդ անվանումը հավանաբար բացատրվում է նրանով, որ առավել հայտնի էր Վանա լճի շրջանում կատարվող նրա արդյունահանումը: Ինչպես հաղորդում է 10—11-րդ դարերում ապրած Միջին Ասիայի հայտնի գիտնական ալ-Բիրունին, լեռնային բյուրեղապակին միջնադարյան Հայաստանում արդյունահանվում էր նաև Բիթլիսում:

Լեռնային բյուրեղապակուց պատրաստում էին ամենատարբեր զարդեր, բազմապիսի անոթներ, պաշտամունքի առարկաներ և այլն: Միջնադարի հայկական ձեռագրերում թանկարժեք քարերի վերաբերյալ նշվում է, որ լեռնային բյուրեղապակու փոշին, իբր, վերքերը բուժելու հատկություն ունի:

Ասենք, որ հնում արտասովոր հատկություն վերագրում էին ոչ միայն այդ հանքատեսակին. օրինակ, կարծում էին, որ զմրուխտը ծովագնացներին փրկում է փոթորիկներից, շափյուղան օգնում է կարիճների խայթոցներից, ալմաստը պահպանում է ընդհանրապես հիվանդություններից, փազահրը՝ թույնից և այլն:

17-րդ դարում անգլիացի նշանավոր քիմիկոս և ֆիզիկոս Ռոբերտ Բոյլի ուսումնասիրությունների շնորհիվ բացահայտվեց, որ լեռնային բյուրեղապակու խտությունը (2,65 գ սմ³) շատ ավելի բարձր է սառույցի խտությունից (0,92 գ սմ³) և որ առաջինը իսկական հանքատեսակ է, որը բացի թափանցիկությունից, ընդհանուր ոչինչ չունի սառած ջրի հետ:

Միկրոսկոպի և Ռենտգենի ճառագայթների օգնությամբ հաստատվեց, որ և՛ սառույցը, և՛ լեռնային բյուրեղապակին բյուրեղային մարմիններ են: Սառույցը կազմված է խիստ սերտաճած մանր բյուրեղիկներից՝ «ասեղիկներից», որոնք զուգահեռ են մեկը մյուսին և ուղղահայաց են ջրի մակերեսին, որտեղ նրանք առաջացել են: Լեռնային բյուրեղապակու բյուրեղները կազմված են կրեմնիումի և թթվածնի ատոմներից (բանաձևն է $SiO_2$), որոնք դասավորված են օրինաչափ և խիստ որոշակի ուղղվածությամբ: Պատահում են այնքան մեծ մաքրությամբ և թափանցիկությամբ բյուրեղներ, որ ճառագայթում են թանկարժեք քարերի նման: Իսկ ալմաստը, ինչպես հայտնի է, մաքուր ածխածին է և լեռնային բյուրեղապակուց շատ ավելի ամուր է և թանկարժեք:

Ներկայումս լեռնային բյուրեղապակին արդյունահանվում է ՍՍՀՄ-ում, Մոնղոլիայում, Բրազիլիայում, Մադագասկար կղզում և այլ երկրներում: Բայց ավելի մեծ քանակով այն աճեցվում է (սինթեզվում է) հատուկ լաբորատորիաներում: Այսպիսի բյուրեղները, ինչպես և առանձնահատուկ թափանցիկ բնական նմուշները անվանում են պիեզոկվարց:

Պիեզոկվարցի թիթեղիկները էլեկտրական լիցքերի ազդեցության տակ տատանվելու ընդունակության շնորհիվ. մեծ դեր են խաղում ռադիոտեխնիկայում: Նրանք կայունացնում են ռադիոալիքների հաճախականությունը, կիրառվում են ձայնի վերարտադրման, ընդունման, հաղորդման մեջ և այլն... Այդ թիթեղիկները վայրկենապես արձագանքում են ճնշման փոփոխություններին: Դրա համար նրանք օգտագործվում են ճնշում չափող սարքերում: Բացի այդ, լեռնային բյուրեղապակին լայն կիրառում ունի օպտիկայում, ինչպես և տեխնիկայի ուրիշ բնագավառներում:

*ՎԱԼԵՐԻ ՍԵՅՐԱՆՅԱՆ*
*երկրաբանական գիտությունների թեկնածու*



# ՆՈՐ ՄՈՐԸ ՉՍԻՐԵՑԻՆ...

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

Պետք է ճանապարհվեինք գիշերով՝ արևը ծագելուն պես սարում լինելու համար:

—Միայն թե չորային չլինի,— մտահոգ կրկնում էր պապիկը ճանապարհին, —թե չէ տեղափոխությունն էլ չի օգնի:

— Պապի՛, բա ասում էիր անձրևի, ցրտի ու քամու ժամանակ մեղուները դժվարանում են դաշտ թռչել,— զարմացավ եղբայրս:

— Էդպես է, բալե՛ս, բայց չոր եղանակին էլ ծաղիկները չեն նեկտար պատրաստում և գործն ավելի է վատանում, եթե չոր եղանակները շարունակվում են, տաք քամուց նեկտարը չորանում է:

— Պապի՛, իսկ ո՞րն է մեղուների համար ամենալավ եղանակը:

— Ամենալավը տաք ու խոնավ օրերն են, երբ մեղուները լիուլի նեկտար են վերցնում ծաղիկներից:

Մեղվանոցի ամենահարմար տեղում պապին խնդրեցինք դնել այն թույլ մեղվաընտանիքը, որին մի անգամ պաշտպանել էինք գող մեղուների հարձակումից և ասացինք, որ դա մերն է՝ իմն ու եղբորս, որ մենք ենք հետևելու դրան:

Պապը ծիծաղեց.

— Ա՛յ երեխեք, էս մեծ մեղվանոցում, էսքան ուժեղ մեղվաընտանիքների մեջ հենց էդ թույլ փեթակն ընտրեցի՞ք:

— Պապի ջան, դու էիր ասում, չէ՞, որ պետք է թույլին օգնել, պաշտպանել, հիմա ո՞նց անենք, որ այս թույլ մեղվաընտանիքն էլ ուժեղանա:

Պապը խրախուսանքով գլխով արեց.

— Նրան կուժեղացնենք հենց էդ ուժեղ ընտանիքների հաշվին՝ մի ուժեղ ընտանիքից երկու մեղրահաց՝ մեղուներով, կվերցնենք կտանք էդ թույլ ընտանիքին:

Որոշ ժամանակ անց մեզ համար էլ արդեն տեսանելի էր, թե ինչպես կյանքըն օրեցօր սկսեց աշխուժանալ այդ փեթակում:

Ես ու եղբայրս դեռ գյուղում էինք նկատել, որ որոշ մեղուներ դաշտից վերադառնալիս ասես պարում են:

Եթե գյուղում նրանք «շուրջպար» և «շորորապար» էին կատարում, ապա այստեղ՝ սարում, գլխավորապես «շուրջպար» են անում:

— Երեխե՛ք ջան, էդ «պարողները», — բացատրեց պապիկը,— մեղվաընտանիքների «հետախույզ» մեղուներն են: Նրանք «շուրջպարով» փեթակի իրենց քույրերին հայտնում են, որ նեկտարի կամ ծաղկափոշու աղբյուրը մոտակայքում է, փեթակից շատ քիչ հեռու: Իսկ «հետախույզների» «շորորապարը» տեսնելիս՝ մեղուները պատրաստվում են հեռավոր թռիչքի:

Արդեն բավական ուժեղացած մեր մեղվաընտանիքը նեկտարի ու ծաղկափոշու այսպիսի առատության մեջ կարողացավ ոչ միայն իր ձմեռվա պաշարն ստեղծել, այլև պապան աճագին մեղր ստացավ նրանից մեղրաքամի ժամանակ:

Մենք շատ էինք ուրախացել, պապան էլ գոհ էր, բայց, հավանաբար, վաղաժամ էր մեր ուրախությունը:

Եղբայրս, որ լավ տարբերում էր աշխատավոր մեղուներին բոռերից ու բոռերին էլ մայր մեղուներից, մի օր, չըհամբերեց, որ պապը հիմնական ըստուգման ժամանակ հանի մեր փեթակին, վազելով, հևիհև եկավ, թե մեր մեղվաընտանիքի մայրն անհետացել է: Պապան անհանգստացավ: Դես նայեցինք, դեն նայեցինք, չկար, պապան ասաց, որ, հավանաբար, մեղվաքամի ժամանակ է մայրը կորել:

— Դե առանց մոր էլ ի՞նչ ընտանիք,— տնքաց նա:

— Բա ո՞նց կլինի,— բոլորովին վըհատվեց եղբայրս:

— Ոչինչ, բալա՛ ջան, պահեստի մայրեր ունենք,— ժպտաց պապը:

— Իսկ մեղուները կընդունե՞ն նոր մորը:

— Հիմա կտեսնենք:

Պապը վերցրեց պահեստի մորը մի քանի մեղուների հետ և դրեց մայրավանդակի մեջ, իսկ վանդակի ներքևի մասում մոմի բարակ շերտ կպցրեց և վանդակը կախեց մեր թույլ մեղվաընտանիքի երկու շրջանակների մեջտեղը:

— Երեխե՛ք ջան,— բացատրեց նա, — եթե մեղուները նոր մորն ընդունելու լինեն, պետք է ծակեն մոմի այս շերտը և մորը հանեն վանդակից:

— Իսկ շուտ կընդունե՞ն, պապի:

— Ի՞նչ ասեմ, կարող է մի քանի ժամից հետո ընդունեն, կարող է մի քանի օրից:

Անչափ հետաքրքրասիրությունից այդ մի քանի ժամը մի քանի օր դարձավ մեզ համար, մինչև որ պապը նորից բացեց փեթակը: Մեղուները կուտակվել էին վանդակի վրա և կրծոտում էին մայրավանդակի մետաղալարերը:

Մենք վախեցած նայեցինք պապին:

— Ուրեմն մեղուները դեռ չեն ընդունել մորը,— ասաց պապը և նայելով մեր ընկճված դեմքերին՝ ասաց.

— Ա՛յ երեխեք, մի քիչ համբերեք, էլի՜...

Իսկ որոշ ժամանակից հետո զարմանքով տեսանք, որ վանդակի վրա մեղուներ քիչ կան և եղածներն էլ խաղաղվել են ու կնճիթները հանած հետևում են մայր մեղվի շարժումներին:

Պապան ուրախացավ. նշանակում է նրանք արդեն սիրել, ընդունել են նոր մորը և մետաղացանցի արանքներից կնճիթներով խնամում ու կերակրում են նրան:

Պապը մեղուներին օգնելու համար բացեց մոմի շերտը և ազատեց մորը:

— Մի քիչ հետո էլի կստուգենք:

Մենք հարցական նայեցինք պապին.

— Եթե մորը հալածողներ լինեն, նորից կդնենք վանդակի մեջ և կթողնենք էդպես, մինչև բոլորն ընտելանան նրան:

Բայց, բարեբախտաբար, հալածողներ չեղան: Բոլոր մեղուներն էլ ընդունել էին նոր մորը:

Եվ այսպես, մեր մեղվաընտանիքի անհաջողությունները կարծես վերջացան:

Նա մայր ուներ, բավական ուժեղացել էր: Մեղրաբերքն էլ վերջացավ, քանի որ ծաղիկներն արդեն թափվում էին, խոտաբույսերը քաղվում ու չորանում:

Ցրտերն ընկնում էին:

Ժամանակն էր սարից իջնելու:

*ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*




Ընդամենը 100 տարի առաջ էլեկտրոնի գոյության մասին ոչ ոք չգիտեր: Իսկ մինչև վերջերս ֆիզիկայի դասագրքերում ատոմը ձևակերպված էր որպես նյութի փոքրագույն, անբաժանելի մասնիկ (ատոմ բառը հունարեն նշանակում է անբաժանելի): Այսօր արդեն էլեկտրոնից, պրոտոնից, նեյտրոնից և այլ հայտնի տարրական մասնիկներից զատ, գիտությանը հայտնի են ևս մոտ 200 նըմանատիպ մասնիկներ, որոնք հայտնաբերվել են երբեմնի «փոքրագույն, անբաժանելի» ատոմում: Դրանցից միայն էլեկտըրոնը դարձավ մեր դարի գիտության «գլխավոր հերոսն ու առաջին գործող անձը», ոչ թե առաջինը լինելու, այլ լիցք և չնչին մասսա (կշիռ) ունենալու պատճառով: Նրա հարևանությամբ «ապրող ու գործող» մասնիկներից շատերը կամ լիցք չունեն (չեզոք են), կամ էլ նրանց մասսան մի քանի հարյուր անգամ գերազանցում է էլեկտրոնի մասսային: Ինչպես ամեն տեղ, այստեղ ևս կշիռը շարժունակության առաջին նախապայմանն է: Ահա թե ինչու գիտությունը կոչվում է «էլեկտրոնիկա» և ոչ թե, օրինակ, «պրոտոնիկա» կամ «նեյտրոնիկա»: Էլեկտրոնիկա բառի ստուգաբանությունը հենց վկայում է, որ այդ հրաշագործ գիտության հիմքերի հիմքը էլեկտրոնն է:

Ամեն ինչ սկսվեց այն օրից, երբ գերմանացի գիտնական Հելմհոլցը հայտնաբերեց էլեկտրականության այն չնչին քանակը, որն իր վրա կրում է էլեկտրոնը:

Իսկ որտեղի՞ց վերցնել այդ էլեկտրոնները և ապա ինչպե՞ս ստիպել նրանց շարժվել՝ և այն էլ մի ուղղությամբ:

Շուտով պարզվեց, որ ատոմից էլեկտրոններ դուրս կորզելու համար բավական է մետաղը տաքացնել: Այս մեթոդով նիկելն ու վոլֆրամը «գոլորշիացնում են» էլեկտրոնների հսկայական քանակություն: Մընում էր միայն ստիպել, որ էլեկտրոնային ամպը շարժվի որոշակի ուղղությամբ: Հենց այստեղ էլ օգտագործվեց էլեկտրոնի բացասական լիցք ունենալու հատկությունը: Եթե որոշ հեռավորության վրա անօդ պայմաններում տեղադրենք դրական լիցք ունեցող որևէ մետաղի թիթեղ, ա-

պա էլեկտրոնները կձըգվեն դեպի նա: Այս գաղափարը առաջին էլեկտըրոնային լամպի ըստեղծման հիմք ծառայեց: Այն ստեղծվեց 1904 թվականին, անգլիացի Ֆլեմինգի կողմից և կոչվեց դիոդ:

Լամպերը գնալով կատարելագործվում ու ներթափանցում էին կյանքի բոլոր բնագավառները: Նկատած կլինեք, ռադիոընդունիչների ու հեռուստացույցերի «ներքին օրգանները» հենց այդ թույլ մարմրող լամպերն ու այլ էլեկտրոնային սարքերն են: Ասենք, հենց հեռուստացույցի կինեսկոպն իրենից մի մեծ էլեկտրոնային լամպ է ներկայացնում: Բավական է ղեկավարել դեպի էկրանը շարժվող էլեկտըրոնային ճառագայթը և... էկրանի վրա էլեկտըրոնը «նկարի» դերասանի, չեբուրաշկայի կամ ֆուտբոլիստի շարժվող պատկերը:

Չափսերով խոշոր՝ մեծ էներգիա պահանջող լամպերին պարտության մատնեց... փոքրիկ կիսահաղորդիչային տըրանզիստորը: (Սրանք կատարում են նույն դերը, ինչ լամպերը և միաժամանակ զերծ են նըրանց թերություններից): Ձեզնից ո՞վ չունի, կամ ո՞վ չի տեսել ձեռքի ու գրպանի այն փոքրիկ ռադիոընդունիչները, որոնք հաճախ հենց այդպես էլ կոչվում են՝ «տրանզիստոր»: Այս անվանումը ինքնին հաստատում է դրանց առավելությունը նախկին հըսկայական ռադիոընդունիչների նկատմամբ: Չափերի այդպիսի կըտրուկ փոփոխություններ տեղի ունեցան նաև էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և այլ էլեկտըրոնային սարքերի հետ:

**Փոքրածավալություն** ու **գերհուսալիություն** — այս էր տիեզերագընացության պահանջները: Եվ էլեկտրոնիկան այդ էլ բավարարեց՝ կիսահաղորդիչային բյուրեղների օգտագործման շնորհիվ: Արդյունքը եղավ այն, որ նախկին լուցկու տուփի չափ հանգույցը դարձավ... քորոցի գլխիկի չափ:

Այսօր էլեկտրոնիկայի շնորհիվ է, որ ատոմի անսպառ էներգիան ծառայում է մարդուն, որ մենք ունենք այնպիսի գերխելացի սարք, ինչպիսին ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենան է, որ մարդկությունը օգտվում է լազերների (հիշեցեք ինժեներ Գարինի մասին ֆիլմերը) հրաշագործ ծառայություններից:

*ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ*

# ԳԻԳԱՆՏ

Ծաղիկները քնքշության խորհրդանիշ են: Մենք սովոր ենք տեսնել բազմերանգ ու բազմաբույր սովորական ծաղիկներ, որոնք ամենուրեք թափանցել են մեր կենցաղի մեջ և անսահման բավականություն ու հմայք են պատճառում մեզ:

Սակայն միշտ չէ, որ ծաղիկները քնքուշ են ու անուշաբույր....

1878 թվականին իտալացի բուսաբան և ճանապարհորդ Օդեարդո Բեկկարին Սումատրա կղզում հայտնաբերեց մի հսկայական ծաղիկ, որի բարձրությունը հասնում էր մինչև երկու մետրի: Ծաղկի հաստ, հյութալի կանաչ ծաղկակիր ցողունը աճում էր ուղղակի գետնից: Ծաղկապսակը դրսից կարմրականաչ էր, ներսի կողմից՝ կարմրագույն: Նրա միջին մասից դուրս էր գալիս դեղին ծաղկափթթությունը, որը հսկայական կողըր էր հիշեցնում: Բեկկարին այդ ծաղիկը անվանեց գիգանտ ամորֆոֆալուս:

Ամորֆոֆալուսը հողի տակ առաջացնում է

# ԾԱՂԻԿՆԵՐ




աշխարհի ամենախոշոր սոխը, որի քաշը հասնում է.... 23 կիլոգրամի։ Բույսը ունենում է ընդամենը մի քանի փոքրր և մի խոշոր տերև։

Նյու-Յորքի բուսաբանական այգու ջերմատանը հաջողվել է աճեցնել ամորֆոֆալուսի մի ծաղիկ, որի բարձրությունը հասնում էր 2 մետր 42 սանտիմետրի։ Այս բույսը խնամող այգեգործները ու գիտնականները ստիպված էին աշխատել... հակագազերով, քանի որ ամորֆոֆալուսը թունավոր գազեր է արձակում։ Ամորֆոֆալուսի օրինակը եզակի չէ...

1818 թվականին հոլանդացի ճանապարհորդներ Առնոլդը և Ռաֆֆլեսը Սումատրա կղզու խորքերում հայտնաբերեցին տհաճ հոտ արձակող մի հսկայական, տարօրինակ ծաղիկ, որի տրամագիծը հասնում էր.... 1,0 մետրի։ Հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ ծաղիկը փոշոտվում է մսաճանճերի միջոցով, որոնց գրավում է նեխած մսի հոտը։ Ամբողջ բույսը կազմված էր միայն մեկ ծաղկից, չուներ տերևներ ու ցողուն և, որպես իսկական մակաբույծ, հատուկ ծծիչների միջոցով ամրանում էր այլ բույսերի վրա և սնվում նրանց հաշվին։ Ի պատիվ հայտնագործողների, հրաշք ծաղիկը անվանվեց ռաֆլեզիա Առնոլդիի։

Այնուամենայնիվ, ամբողջ աշխարհում ծաղկափթությունների մեջ ամենախոշորը Արևելյան Հնդկաստանում աճող թալլիպոդյան արմավենու ծաղկափթությունն է, որը հասնում է 14 մետր բարձրության և ունի 12 մետր տրամագիծ։ Այս հրաշալի, գիգանտ ծաղկափթությունը բուսական աշխարհի աչքի ընկնող հրաշալիքներից է և մեծ դժվարությամբ է աճում արհեստական պայմաններում։ Այնուամենայնիվ, ամերիկացի գիտնականներին հաջողվել է Առնոլդ-արբորետումի ջերմատանը աճեցնել թալլիպոդյան արմավենու մի քանի բույսեր, որոնցից մեկը մի քանի տարի առաջ ծաղկեց, այցելուներին զարմացնելով իր գիգանտ ծաղկափթությամբ։

Հրաշք-ծաղիկները բուսական աշխարհի ամենահետաքրքիր երևույթներից են։ Դրանց ուսումնասիրությունները հրակայական փաստացի նյութ են տալիս գիտությանը, որով հնարավորություն է ստեղծվում ավելի ամբողջական պատկերացում կազմել արտաքին միջավայրի ու բուսական օրգանիզմների փոխադարձ կապի ու պայմանավորվածության մասին։

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 10 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջին՝ «Աշուն»
Լուսանկարը՝ ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ

Շապիկի երկրորդ էջին՝
Գ. ԽԱՆՋՅԱՆ— «Հայոց այբուբեն» (դրվագ)

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Ե., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար):

Գեղ. խմբագիր՝
Ն. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 3.08.1982: Ստորագրված է տպագրության 21.09.1982: ՎՖ 03959: Թուղթը օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նոր: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ., մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 63962: Պատ. 1849: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.














Երաժշտական ձայնանիշերի և տառերի օգնությամբ փորձեք կարդալ չորս աշխարհահռչակ կոմպոզիտորների ազգանունները:

*Նկար-առաջարկ՝*

*ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*

## № 9 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ № 9

1. Իմաստունը ճիշտ էր գուշակել, այդ թիվը 2520 է:

2. Օմար Խայամի հանրահաշվական հավասարումը երկու լուծում ունի՝

$$x=2, \quad x=-\frac{2}{5}$$

